ՀԱՅԿԱԿԱՆ ՄԱՏԵՆԱՇԱՐ
ԳԱԼՈՒՍՏ ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ ՀԻՄՆԱՐԿՈՒԹԵԱՆ

ՆԻԿՈՂԱՅՈՍ ԱԴՈՆՑ

# Ե Ր Կ Ե Ր

ՀԻՆԳ ՀԱՏՈՐՈՎ

Դ

## ՔՆՆԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ

ԵՊՀ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ – 2009

ՀՏԴ 941(479.25)
ԳՄԴ 63.3(2Հ)
Ա 205

**Ադոնց Ն. Գ.**

Ա 205 Երկեր. հատ. Դ., Քննական պատմություն Հայոց/Հրատարակության պատրաստեց Պ. Հ. Հովհաննիսյանը. Եր.: ԵՊՀ հրատ., 2009.- 720 էջ + 2 ներդիր:

*Նիկողայոս Ադոնցի երկերի չորրորդ հատորն ընդգրկում է ականավոր հայագետի «կարապի երգը»՝ մահվան նախօրյակին գրված քառահատոր «Քննական պատմություն Հայոց»-ի առաջին՝ «Հայաստանի պատմություն: Ակունքները. X-VI դդ. Ք. ա.» հատորը, ինչպես նաև հայ ժողովրդի կազմավորմանը վերաբերող հոդվածները: Ընթերցողի ուշադրությանն ենք ներկայացնում նաև անավարտ մնացած երկրորդ-երրորդ հատորներից առանձին՝ առավել ամբողջական հատվածներ:*

*Հասցեագրվում է հայագետներին և ընթերցող հանրությանը:*

**ԳՄԴ 63.3(2Հ)**

**ISBN 978-5-8084-1146-3**



FUNDAÇÃO CALOUSTE GULBENKIAN

*Խմբագրական հանձնաժողով*

Հովհաննիսյան Պ. Հ.
Մաղոյան Ա. Գ.
Ստեփանյան Պ. Գ.

*Հատորը հրատարակության պատրաստեց*

Պ. Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԸ

*Վերջաբանի փոխարեն (Գ. Խ. Սարգսյան)* ....................................................424

## ՔՆՆԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ

(հատվածներ, նյութեր երկրորդ և երրորդ հատորներից)

*I. Հայաստանը Ք. ա. IV-I դարերում* (Թարգմ. Վ. Ա. Պողոսյան)..............................431

1. Արևելքը [և Հայաստանը] մակեդոնական կայսրության օրոք ........................431
2. [Արտաշես I-ը և հայկական հողերի միավորումը] ..........................................445
3. [Հայաստանը Տիգրան II Մեծի գահակալության ժամանակաշրջանում].......456

*II. Կրասսոսն ընդդեմ պարթևների (Ըստ սկզբնաղբյուրների)*
(Թարգմ. Ս. Ս. Խաչատրյան). .....................................................................513

*III. [Հայաստանը հռոմեա-պարթևական հակամարտության ոլորտում*
*(Ք. հ. II դար - III դարի սկիզբ)]* (Թարգմ. Ս. Ս. Խաչատրյան) ...................523

*IV. Բյուզանդա-պարսկական հարաբերությունները և Հայաստանը*
*(V դարի վերջ - VI դարի կես)* (Թարգմ. Օ. Ս. Վարդազարյան).............. 535

ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ .....................................................................593

ՑԱՆԿԵՐ...................................................................................................... 621

## II. ԿՐԱՍՍՈՍՆ ԸՆԴԴԵՄ ՊԱՐԹԵՎՆԵՐԻ
### (Ըստ սկզբնաղբյուրների)

(էջ 513)

Գրված է 1940-1941 թվականներին, Բրյուսելում: Ֆրանսերեն բնագիրը գտնվում է Համազգայինի Բեյրութի պահոցի պրոֆ. Ն. Ադոնցի ֆոնդում (պահարան I, գզրոց Բ, թղթածրար 2): Բնագիրը, որն ունի 23×30 սմ մեծություն, գրված է 11 թերթիկների վրա: Լինելով սևագիր տարբերակ, գրված է անփույթ ձեռագրով, ուղեկցող հապավումներով ու ջնջումներով:

Տպագրվում է Ս. Ս. Խաչատրյանի թարգմանությամբ:

Ներկայացված բնագիրը կանոնավոր շարադրանք չէ, այլ նախապատրաստական նյութ՝ «Քննական պատմության» շարադրվելիք երկրորդ հատորի համար: Այս և հաջորդ նյութը հրապարակում ենք, որպեսզի պատկերացում կազմվի Ն. Ադոնցի ստեղծագործական լաբորատորիայի, պատմության շարադրման նրա մեթոդի, աշխատանճի, դրա փուլերի մասին: Թեև այս բնագրում վերլուծական կողմը թերի է, սակայն հաճախ պատմաբանն արտահայտում է տեսակետներ, որոնք չափազանց կարևոր են տեղի ունեցող իրադարձությունները ըմբռնելու, ճիշտ գնահատելու և կողմնորոշվելու համար:

Այսպիսով, այս բնագրերն ատաղձ են առավել ամբողջական պատմություն շարադրելու ճանապարհին: Դրանք, ինչպես Ադոնցի յուրաքանչյուր տող, նախադասություն, միտք ունեն ազգային-մշակութային արժեքի նշանակություն և հետևաբար թանկ են ու անգնահատելի:

## II. ԿՐԱՍՍՈՍԸ ԸՆԴԴԵՄ ՊԱՐԹԵՎՆԵՐԻ
### (Ըստ սկզբնաղբյուրների)

*Կրասսոսը մի քանի քաղաք է գրավում Միջագետքում և վերադառնում Ասորիք: Օրոդեսը պատվիրակություն է ուղարկում Կրասսոսի մոտ: Չարագուշակ նախանշաններ՝ Եփրատն անցնելիս: Արգարի նենգ պահվածքը: Հռոմեացիների պարտությունը: Կրասսոսը նահանջում է Խառան: Սուրենը առաջարկում է բանակցել: Սուրենի ուխտադրժությունը: Կրասսոսի մահը: Քվեստոր Կասսիոսը վերջ է դնում պատերազմին:*

*Սկզբնաղբյուրներ.* ***Plutarchusi,*** *Crassus, 16-33.* ***Appiani Alexandrini*** *Syriaca, 51. De bello civili, II, 18.* ***Justini M. Juniani*** *Epitoma historiarum Philippicarum Pompeii Trogi, 41-42.* ***Strabonis*** *Geographica, I, 14. XI, 510, 515, 522. XIV, 669. XV, 702, 718, 732. XVI, 743-749.* ***Josephi Flavii*** *Antiquitates Judaicae, XIV, 7, 1, 3. XVIII, 2, 4, 8. De bello Judaico, 1, 8. 8, 13.* ***Ciceronis,*** *Epistolae ad familiares, II, 17. Ad Atticum, IV, 13. V, 20. VI, 5.* ***Orosii Pauli*** *Hisoriarum adversus paganos libri, VI, 13.*

### ԿՐԱՍՍՈՍԻ ԱՐՇԱՎԱՆՔԸ
**[Հռոմեական թվարկության] 700 թ. [= Ք. ա. 54 թ.]**

Պարթևների թագավոր Օրոդեսի մասին պատմագիրն ասում է. «Օրոդեսին, որը դեռ գահին նոր հաստատված էր (ἅτε καὶ νεοκατάστατον), կարելի է հեշտությամբ գերեվարել» (**Cassii Dionis Cocceiani**, XL, 12):

Երբ Կրասսոսն ասում է. «αὐτὸς γὰρ τῇ 'Αρμενίᾳ τῇ τοῦ Τιγράνου ποτὲ γενομένῃ», նա մտադիր էր պատերազմը տեղափոխել «Հայաստան, որը նախկինում պատկանել է Տիգրանին», որպեսզի «Արտավազդը՝ Տիգրանի որդին, որն այդ ժամանակ թագավորում էր այնտեղ» 'Αρταβάζης ὁ τοῦ Τιγράνου παῖς, ὁ τότε αὐτῆς βασιλεύων (Cassii Dio., XL, 16) իր սեփական երկրի վիճակով մտահոգված, որևէ օգնություն չուղարկի հռոմեացիներին:

Ստանալով Ասորիքը՝ Կրասսոսը երազում էր ամբողջ Արևելքը նվաճելու մասին: Նա հույսի թևին սլանում էր մինչև Բակտրիանե, Հնդկաստան և Արտաքին ծով: Քվեարկված օրենքը ոչինչ չէր բովանդակում պարթևական պատերազմի վերաբերյալ: Սակայն բոլորը գիտեին, որ դա Կրասսոսի միակ

ցանկությունն էր: Նրա ռազմարշավին ուժեղ դիմադրություն կար (1). ռմանք, ժողովրդական տրիբուն Ատեյոսի հետ, դժգոհ էին, որ նա պատերազմի է դուրս գալու այնպիսի մարդկանց դեմ, որոնք ոչնչով մեղավոր չէին և որոնց հետ [հռոմեացիները] կապված էին դաշնագրերով (**Plut.**, Crass., 16):

Կրասսոսը դուրս եկավ արշավանքի և հասավ Ասորիք: Զորքն անցավ Եփրատը և գրավեց Զենոդոտիա քաղաքը, որի տիրակալն Ապոլլոնիոսն էր (այսինքն՝ դա հունական քաղաք էր), կողոպտեց քաղաքի հարստություն-ները և զորքին թույլատրեց իրեն իմպերատոր հռչակել: Առաջ ընթանալու փոխարեն Կրասսոսը վերադարձավ Ասորիք՝ իր ձմեռային զորանոցները, և այստեղ զբաղվեց ավելի շուտ շահադիտական, քան ռազմավարական գործունեությամբ:

Օրեր շարունակ հաշվում էր քաղաքների եկամուտները, կշռում ու չափում Հիերապոլսի հռչականավոր դիցուհու (2) գանձերը, քաղաքներին և իշխանավորներին կարգադրում զորք հավաքել, իսկ հետո՝ դրամի դիմաց, նրանց ազատում այդ պարտականությունից: Պահվածք, որը նրան պատվազրկում էր և դարձնում արհամարհելի (**Plut.**, Crass., 17):

Այն ժամանակ, երբ Կրասսոսը հավաքում էր իր զորքը Եփրատն անցնելու համար, ծանուցում ստացվեց պարթևների արքա Օրոդեսից: **«Եթե զորքն** ուղարկված է հռոմեական ժողովրդի կողմից,- ասում էր պարթև արքան,- պատերազմը կլինի դաժան և անզիջում, բայց եթե Կրասսոսը արշավանքը ձեռնարկել է իր անձնական շահի համար, ինչպես ասում են, արշավանքը ձեռնարկել է իր անձնական շահի համար, ինչպես ասում են, ապա արքան ձեռնպահ է մնում պատերազմից, իսկ հռոմեական զինվորներին, որոնք ավելի շուտ կալանքի տակ են, քան ծառայության մեջ, ազատ է արձակում»:

Կրասսոսը դրան հոխորտանքով արձագանքեց, թե պատասխանը կտա Սելևկիայում: Վագիսեսը պարթևների դեսպանների ավագը, ծիծաղեց և **ձեռքի ափը** ցույց տալով Կրասսոսին ասաց. «Ավելի հեշտ այստեղ մազեր կբուսնեն, քան դու, Կրասսոս, կտեսնես Սելևկիան»:

Կրասսոսը որոշեց մինչև Սելևկիա առաջանալ Եփրատի ընթացքով: Հայոց թագավոր Արտավազդը (55-30) Կրասսոսի ճամբար ժամանեց 6.000 հեծյալով, որ ընդամենը նրա թիկնապահներն ու ուղեկիցներն էին: Նա խոստանում էր տալ ևս 10.000 զրահավոր հեծյալ և 30.000 հետևակ: Սակայն Կրասսոսին խորհուրդ էր տալիս Պարթևստան արշավել Հայաստանով. նրա զորքն այստեղ ոչ միայն առատ պարեն կունենար, քանզի դրա համար կհոգար հենց ինքը՝ Հայոց թագավորը, այլև, բացի դրանից, ապահով կլիներ՝ պաշտպանված լեռներով ու բլուրների անվերջանալի շար-

քերով, որոնք դժվարանցանելի են պարթևների միակ ուժը համարվող հեծելազորի համար:

Կրասսոսը չունկնդրեց այս խելացի խորհրդին և պատասխանեց, որ կառաջանա Միջագետքով: Արտավազդը քառատրոփ վերադարձավ իր երկիր (**Plut.**, Crass., 19):

Զևգմայի մոտ Կրասսոսն անցավ Եփրատը և պատրաստվում էր իջնելու գետի երկայնքով: Մեկը խորհուրդ տվեց զորքը ետ քաշել դեպի գրավված մոտակա գյուղը՝ մինչև թշնամու վերաբերյալ ստույգ տեղեկությունների առկայությունը: Մինչ քննարկում էին այդ տեսակետը, եկավ արաբական ցեղերից մեկի առաջնորդը՝ Արիամնս (Աքբար կամ Աբգար, **Cass. Dio.**, XL) անվամբ և առաջարկեց շարժվել հարթավայրով: Կրասսոսը համաձայնեց: Ճանապարհը սկզբում հեշտ էր, սակայն շուտով դարձավ հոգնեցուցիչ: Չորսբոլորն ընդարձակ ավազուտներ էին, անտառազուրկ, անջրդի: Մինչև անընդգրկելի հեռուները ձգվող տարածությունը ջլատեց հռոմեացիների խիզախությունը. նրանց աչքի առաջ անսահման ծովի նման տարածվում էին ավազի ալիքները, որ զինվորներին խորապես հուսալքում էր: Հռոմեացիների մեջ կասկած առաջացավ մատնության վերաբերյալ:

Հայոց թագավոր Արտավազդի հայտնած նոր տեղեկության համաձայն՝ իր վրա հարձակված Օրոդեսի դեմ անզիջում պատերազմի պատճառով ինքը չէր կարող Կրասսոսին օգնություն ուղարկել, բայց հորդորում էր հնարավորինս շուտ շրջվել դեպի Հայաստան և միանալ հայերին, որպեսզի միասին կռվեն Օրոդեսի դեմ, իսկ եթե ոչ՝ մշտապես խուսափել այնպիսի վայրերից, որոնք բարենպաստ են հեծելազորի համար, և շարունակ ընթանալ լեռնային տարածքներով:

Կրասսոսն այս անգամ ևս զուր տեղը արհամարհեց Արտավազդի խելացի խորհուրդը (3): Նրա նամակին չպատասխանեց և պատվիրեց հաղորդել, որ ինքը ժամանակ չունի զբաղվելու հայերով, և որ Արտավազդից վրեժ կլուծի դավաճանության համար (**Plut.**, Crass., 22):

Մյուս խորհրդատուն՝ արաբների առաջնորդը, հռոմեացիների վերաբերմունքից վրդովված՝ հեռացավ: Երբ տեսավ, թե հռոմեացի զինվորներն ինչպես են զանգատվում, որ արաբ ավազակների առաջնորդի պատճառով զորքն անծայրածիր անապատում է, նա ծիծաղելով ու ծաղրելով նրանց ասաց. «Դուք գուցե ձեզ պատկերացնում եք հայրենի Կամպանիայում ճանապարհորդելիս, եթե այդքան կարոտել եք աղբյուրների և առվակների ջրերին, ծառերի ստվերներին, բաղնիքներին և հյուրանոցներին: Մոռացե՞լ եք, որ արդեն անցել եք արաբների և ասորիների սահմանը»:

Հռոմեական զորքը շուտով հասավ Բալիսսոս գետը: Հրամանատարներից շատերն այն կարծիքի էին, որ հարկավոր է այդտեղ էլ կանգ առնել՝ հանգստանալու և գիշերելու համար և հակառակորդի զինվորների թիվն ու մարտական դասավորությունն իմանալուց հետո արշալույսին առճակատել նրան: Բայց Կրասսոսը շտապում էր սկսելու գործողությունը և հրամայեց առաջանալ: Նա պարթևներին հանդիպեց Խառանի մոտ: Պարթևական զորքի հրամանատարը սպարապետ Սուրենն էր: «Սուրենը չափազանց արտասովոր մարդ էր. հարստությամբ, տոհմիկ ծագումով ու փառքով նա արքայից հետո երկրորդն էր, իսկ արիությամբ ու հնարագիտությամբ գերազանցում էր իր ժամանակակից բոլոր պարթևներին: Ոչ ոք նրան չէր կարող համեմատվել ո՛չ հասակով և ո՛չ էլ մարմնի գեղեցկությամբ: Նա արշավանքի էր դուրս գալիս միշտ իր հետ 1000 ուղտ՝ բեռնված իր իրերով, և 200 սայլ, որ տանում էին հարճերին: Նրան ուղեկցում էին զրահապատ 1000 հեծյալ և շատ մեծ թվով թեթևազեններ: Նա ընդհանուր հաշվով ուներ մոտավորապես 10.000 հեծյալ: Տոհմական ծագումով նրան էր պատկանում պարթևական արքային թագադրելու իրավունքը, երբ վերջինս գահ էր բարձրանում» (**Plut.**, Crass., 21, հմմտ. 24):

Սուրենը հարձակվեց Կրասսոսի վրա և խուճապի մատնեց նրան: Կրասսոսի որդին սպանվեց շատ զորապետերի հետ: Կրասսոսն իր զորքի մնացորդների հետ փախավ Խառան: Ապա ընկավ պարթևների ձեռքը և նույնպես սպանվեց: Հռոմեացիները կորցրեցին 20.000 սպանված և 10.000 գերի:

Պլուտարքոսը փորձել է մեղմացնել Կրասսոսի սխալը: Ըստ նրա՝ հաղթանակած պարթևները, այլ ոչ թե պարտված Կրասսոսն է հանդիպման առաջարկ արել զինադադարի համար: Կրասսոսը չէր ցանկանում ընդունել պարթևների առաջարկը, սակայն զինվորները պարտադրեցին նրան[1]: «Ասացեք բոլորին, որ Կրասսոսը կործանվեց թշնամու խաբեությամբ, և ոչ թե իր համաքաղաքացիների մատնությամբ»:

(Հռոմեացի զորավար Կրասսոսը հետիոտն գնաց Սուրենի մոտ. Սուրենը հրամայեց ձի մատուցել նրան: Կրասսոսն ասաց, որ հանդիպման ժամանակ ամեն մեկը հանդես գա սեփական երկրի սովորույթով: Բերեցին ոսկե սանձով զարդարված ձի: Կրասսոսին նստեցրին ձիուն և տարան):

[1] «Դուք տեսնում եք, որ ինձ պարտադրում են գնալ, և վկաներն եք, թե ինչպիսի ամոթ և բռնություն եմ ստիպված կրում» (տե՛ս **Plut.**, Crass., 30):

Սուրենը հռոմեացիներին մեղադրում էր, որ նրանք այնքան էլ չեն մտահոգվում պայմանագրերի համար [և հաճախ մոռանում են դրանք] (Plut., Crass., 31):

Պլուտարքոսը փորձել է Կրասսոսին ներկայացնել իբրև մատնության զոհ: Իբր հայերը, արաբները դավաճանել են նրան պարթևների դեմ պայքարում, խաբել են: Իզուր:

Հայոց թագավորը միանգամայն առողջ գիտակցությամբ էր խորհուրդ տվել հռոմեացի զորապետին: Խորհուրդն անկեղծ էր ու լիովին ողջամիտ: Օրոդեսը, Կրասսոսին կարծելով առավել խոհեմ, ավելի փորձառու, Հայաստան էր տեղափոխել բանակի գլխավոր ուժերը:

Պլուտարքոսը ներկայացնում է այսպիսի մի փաստ. Օրոդեսն արշավում է Հայաստանի թագավորի, իսկ Սուրենին ուղարկում Կրասսոսի դեմ: Գոռոզամտությունից մղվա՞ծ: Պլուտարքոսը չի կարծում, որ այդ նույն մարդն իբրև հակառակորդ անարգել է Կրասսոսին՝ Հռոմի եռապետերից մեկին, և հեռացել: Նա ցանկանում էր հեռվից դիտել և սպասել ապագա իրադարձություններին, իսկ Սուրենը սովորական մարդ չէր, նա երկրորդն էր արքայից հետո...: Այսպիսով,

1) Արտավազդի ծրագիրն ավելի խելամիտ էր, քան կարծում էր Կրասսոսը: Ապացույցը՝ պարթևների արքան բանակի գլխավոր ուժերով ուղղվեց դեպի Հայաստան՝ անկասկած ենթադրելով այնտեղ հանդիպել Կրասսոսին: Պլուտարքոսին հետաքրքրում է այն հարցը, թե թագավորն ինչու է անձամբ գնացել ընդդեմ Արտավազդի, Կրասսոսի դեմ մի զորավարի՝ Սուրենին ուղարկելը բավարար համարելով: Արդյո՞ք քամահրանքն է պատճառը, ինչպես կարծում են ոմանք: Պլուտարքոսը այդպես չի մտածում և փորձում է միանգամայն կամայական այլ բացատրություն տալ: Ըստ նրա՝ «վախենալով վտանգից, արքան կամենում էր իրադարձություններին հետևել հեռվից»: Դա կլիներ վատ ռազմավարություն, քանզի տարածությունը մեծ էր, և նա չէր կարողանա ղեկավարել պատերազմի ընթացքը: Մյուս բացատրությունն այն է, որ Սուրենը սովորական մարդ չէր, այլ երկրորդն էր արքայից հետո, և ուրեմն՝ Կրասսոսի արժանի հակառակորդը:

Սրանք պարզունակ ենթադրություններ են: Ճշմարտությունն այն է, որ Օրոդեսը ռազմական գործում Կրասսոսին համարում էր իրենից ավելի փորձառու և ավելի խորաթափանց:

2) Հարկ չկար զգուշանալու նաև արաբների առաջնորդի խորհրդից: Նա Օսրոենեի թագավորն էր և ոչ մի շահ չուներ դավելու Կրասսոսին: Պարթևների արքայի՝ իր ահեղ հարևանի, պարտությունը նրա համար

առավել քան ցանկալի էր: Հռոմեացիները ոչ մի վստահություն չէին ներշնչում: Արաբը պիտի որ գործեր գաղտնիորեն:

Բացի այդ, արաբի՝ Կրասսոսի համար նախապատրաստած առաջարկը կամ ծրագիրը աղավաղված է Պլուտարքոսի կողմից: Արաբը հռոմեացի զորավարին իրավացիորեն խորհուրդ էր տալիս շրջվել և գնալ գետի ընթացքով: Սելևկիայի ճանապարհը դժվարին էր ու վտանգավոր: Նա Կրասսոսին առաջնորդեց դեպի մեծ ճանապարհը, որը Զևգման միացնում էր Մծբինին: Այն գանգատը, թե իբր արաբը հռոմեական զորքը [խաբեությամբ] մխրճել է անապատի մեջ, զուտ երևակայության արգասիք է: Պատմագիրը խոստովանում է, որ ճակատամարտը սկսվել է Խառանի մոտակայքում[1]: Դա հենց երկրորդ կանգառն էր Զևգմայից հետո, որ գտնվում էր Բալիսսոս գետի ափին: Ողբերգական նկարագրությունն իրավիճակի, որի մեջ հայտնվել էր զորքը, հավակնոտ հնարանք է: Անշուշտ, չկային Կամպանիայի աղբյուրները, ինչպես հիշատակում է [արաբ առաջնորդը]:

Խառանը գրավված էր հռոմեացիների կողմից, պահազորի հրամանատարը ոմն Կոպոնիոսն էր:

Վերջապես, Կրասսոսի ճամբարում կային բնիկ հույներ (Խառանից): Կրասսոսի որդին՝ երիտասարդ Պուբլիոսը, իր ձեռքի տակ ուներ երկու հույն՝ Հիերոնիմոսին և Նիկոմաքոսին, որոնք նրան հորդորեցին փախչել և թաքնվել Իքնեում՝ հռոմեացիներին հարած ոչ հեռու գտնվող քաղաքում: Հետևաբար՝ միշտ կար հնարավորություն ստուգելու արաբների առաջնորդի ցուցումները:

Գոռոզամտության և անմատչելի վերաբերմունքի պատճառով Պոմպեոսի հեղինակությունը Կրասսոսից ավելի ցածր էր. նա խուսափում էր ամբոխից, հեռու էր մնում ֆորումից, իր աջակցությունը խնդրողներից միայն քչերին էր օգնում, այն էլ՝ առանց հոժարության, որպեսզի իր ունեցած հեղինակությունն ամբողջովին օգտագործեր անձնական կարիքների համար:

Կրասսոսն, ընդհակառակը, միշտ պատրաստ էր ծառայություն մատուցելու՝ ո՛չ անհաղորդ էր, ո՛չ էլ՝ անմատչելի: Նրան կարելի էր տեսնել ուրիշների համար շարունակ եռանդուն կերպով հոգալիս, և բարյացակամ միջամտությամբ գերազանցում էր Մեծն Պոմպեոսին (**Plut.**, Crass., 7):

---

[1] Հրամանատարներից մեկը՝ Էգնատիոսը, 300 հեծյալների հետ Խառան փախավ կեսգիշերին մոտ (**Plut.**, Crass., 27):

Պոմպեոսն այսպես էր վարվում անսահման փառասիրությունից դրդված (**Plut.**, Crass., 14):

Սենատորների հարցին, թե արդյոք ինքը մտադիր է իր թեկնածությունն առաջադրել Սենատում, Պոմպեոսը պատասխանեց. «Հնարավոր է՝ այո, հնարավոր է՝ ոչ»: Պոմպեոսը նկատի ուներ այն, որ իր «*այո*-ն լավ քաղաքացիների համար է, իսկ *ոչ*-ը՝ վատ»: Պատասխանը թվում է չափազանց սնապարծ ու ամբարտավան:

Կատոնի հակադրությունից սարսափահար Պոմպեոսը չի զլանում գործել ո՛չ անարդարություն, ո՛չ բռնություն: Իր ախոյանի՝ Դոմիտիոսի դեմ լարած թակարդը պատիվ չի բերում Պոմպեոսին:

Ըստ Պլուտարքոսի՝ Կրասսոսին թվում էր, թե պարթևները բնավ չեն տարբերվում ո՛չ հայերից, ո՛չ էլ կապադովկիացիներից, որոնց Լուկուլլոսը հաղթել էր կամ կողոպտել ուզածի չափ (**Plut.**, Crass., 18): Նույն Կրասսոսն իր ահաբեկված զինվորներին քաջալերելու համար ասում էր. «Հռոմի մեծ բախտը և փառքը մնում են անսասանելի, քանի դեռ չնչում եք ...: Մեծ գործի ձգտողը պետք է տոկա: Ո՛չ առանց արյունահեղության_Լուկուլլոսը հաղթեց Տիգրանին, իսկ Լուկիոս Կոռնելիոս Սկիպիոնը՝ Անտիոքոսին» (**Plut.**, Crass., 26):

Հայերը զինված էին այնպես, ինչպես պարթևները և մարտաձևով նման էին նրանց: Ըստ Պլուտարքոսի (**Plut.**, Lucul., 26)՝ Տիգրանն իր բանակում ուներ 20.000 նետաձիգ և պարսատիկավոր, [55.000 հեծյալ, 150.000 ծանրազեն հետևակայիններ]՝ հռոմեացիների 10.000 հետևակայինների և 1000 պարսատիկավորների ու նետաձիգների դեմ, ու պարտվեց: Մինչդեռ Սուրենն իր 10.000 նետաձիգներով հաղթեց Կրասսոսին, որն ուներ 7 լեգեոն:

Պլուտարքոսից հետո, մեր ժամանակների պատմաբանները փորձեցին ամեն կերպ պատճառներ փնտրել Սուրենի հաղթանակի տպավորությունը նվազեցնելու նպատակով: «Նիզակակիր հեծելազորն իր թևերի մեջ առավ հռոմեացիներին և քառատրոփելով նրանց շուրջը՝ նետերով ուժասպառ արեց»: Թ. Մոմզենը մշակել է մի տեսություն, որի համաձայն Սուրենի օգտագործած մեթոդը դարաշրջան է կազմում ռազմական պատմության մեջ: Մարտ՝ հեռվից: Արդյո՞ք հռոմեացիները ծանոթ չէին աղեղին (**Th. Mommsen**, Römische Geschte, Bd. III, Berlin, 1857, VII, էջ 185):

Կրասսոսի հրամանով թալանվեցին *[անընթեռնելի է]* Հիերապոլսի Դերկետոյի, Երուսաղեմի Եհովայի և սիրիական շատ տաճարների հարուստ գանձերը: Հպատակ ժողովուրդները հարկադրված էին համակազմ մատակարարել նրան կամ փոխարենը ոսկի տալ:

Եվ այսպես՝ լրիվ մարտախմբով Կրասսոսն անցնում է Եփրատը: Պարթև սատրապը ջախջախվում է Իքնեում: Գրավում են մերձակա տարածքները, հաղթանակ ամրագրում Նիկեփորիոնում [անընթեռնելի՝ Callinicon…] (**Th. Mommsen**, VII, 185):

...Մոտահար զենքը և հռոմեացիների զանգվածային կարգուկանոնն առաջին անգամ կգերազանցվեն հեռանետ զենքով և Սուրենի կիրառած մարտակարգով. այդ ժամանակվանից արդեն իսկ նախապատրաստվում էր ռազմական հեղափոխություն, որը պիտի իրագործվեր շատ ավելի ուշ՝ հրազենի կիրառությամբ: Իսկ դա եղավ Սիննակա բնակավայրի մոտ, օրը՝ 53 թ. հունիսի 9-ին:

Կրասսոսը պարտված է. փորձում են գտնել մեղավորին: Պատճառն այն չէ, որ հռոմեացի զորավարը անխոհեմ է եղել: Ոչ: Մեղադրում են հայոց թագավորին, արաբների առաջնորդին, հույն Անդրոմաքոսին, որը իբր թե պարթևներին տեղեկացրել էր Կրասսոսի ծրագրի մանրամասներին: Ի վերջո՝ նա պարտվեց, որովհետև պարթևներն իրենց դրսևորեցին որպես փայլուն նետաձիգներ:

Կրասսոսի գլուխն ու ձեռքը ուղարկեցին Հայաստան՝ Օրոդեսին:

Արտավազդը կարողացել էր դիմադրություն ցույց տալ Օրոդեսին և նրան հարկադրել խաղաղություն հաստատելու: Բարեկամությունն ամրապնդվեց Օրոդես արքայի որդու՝ Բակուրի հետ Արտավազդի քրոջ ամուսնությամբ: Այդ առթիվ կազմակերպել էին մեծ խնջույք, որի ժամանակ արտասանում էին հույն պոետների ստեղծագործություններից: Օրոդեսին ու Արտավազդին օտար չէին հունարեն լեզուն ու գրականությունը: Արտավազդը անգամ հայտնի էր որպես ողբերգությունների հեղինակ: Գրել է նաև ճառեր ու պատմական երկեր, որոնց մի մասը դեռևս գոյություն ունեին Պլուտարքոսի օրոք:

Երբ բերեցին Կրասսոսի գլուխը, սեղանններն արդեն հավաքել էին, և հույն ողբերգակ դերասան Յասոն Տրալլացին, Կարիա քաղաքից, Ագավեի դերն էր կատարում Եվրիպիդեսի **Բաքոսուհիներ**-ից: Պարթևաց սուրհանդակ Սիլլակեսը մտավ խնջույքի սրահ և Կրասսոսի գլուխը նետեց դահլիճի մեջտեղ:

Ներկաներն ուրախության ճիչեր արձակեցին: Այդ պահին Յասոնը վերցրեց Կրասսոսի գլուխը և երգաձայնեց նույն ողբերգության հետևյալ տողերը՝

> ***Բարձունքից ենք բերում լեռան***
> ***Եղնիկ՝ խոցված մեր փառահեղ հարվածներից:***
> ***Հաջողությունն է, ով որսորդ, ուղեկցում քեզ,***

*Պալատ տար քանկ ավարճ այս (4):*

(Եվրիպիդես, Բաքոսուհիներ, տուն 1168)

Այնուհետև դերասանը երգչախմբի հետ փոխանակեց այս երկխոսությունը.

- **Չեզանից ո՞վ սպանեց նրան:**
- **Ե՛ս սպանեցի, դա ի՛մ սխրանքն է:**

Այդ պահին տեղից վեր թռավ Պոմաքսաթրոսը (Էքսատրոս) [որ սպանել էր Կրասսոսին], խլեց գլուխը և բացականչեց, թե ինքը պիտի հնչեցնի այդ տողերը և ոչ թե Յասոնը: Թագավորը (5), զոհ՝ նվեր շնորհեց նրան, իսկ Յասոնին պարգևեց մեկ տաղանդ արծաթ:

Կրասսոսի արշավանքը ողբերգություն էր, իսկ այդ տեսարանը՝ դրա յուրատեսակ էքսոդոսը (6):

**Թ. Մոմզեն**, էջ 130: Աքեմենյանների դարաշրջանից ի վեր առաջին անգամ Արևմուտքը պարտվեց Արևելքից: Հունական ողբերգությունը գրոտեսկային ու արյունահեղ ծաղրերգության էր վերածվում իր այլասերված զավակների ձեռքով:

Սուրենը սպանվեց (7): Օրոդեսը զինավորեց իր տակավին երիտասարդ ու անփորձ որդուն՝ Բակուրին (8): Օսակեսը (Վասա՞կ) նրան օգնում էր իր խորհուրդներով:

51 թ. պարթևները պաշարեցին Անտիոքը:

Օսակեսը (Վասա՞կ) ճաշկերույթ կազմակերպեց զոհվածների [հիշատակին նվիրված]:

**Թ. Մոմզեն**, էջ 192: Սակայն բոլորի՝ ինչպես բարեկամների, այնպես էլ թշնամիների համար պարզ էր, որ պարթև զինվորը չուներ ավելի մեծ արժանիքներ, քան Արևելքի մյուս զինվորները:

**Թ. Մոմզեն**, էջ 189: Այդ ժամանակ թափառական կատակերգուների մեծաթիվ խմբերից մեկը, որ հունական պոեզիան ու բեմական արվեստը տարածելու համար շրջագայում էին Ասիայի հեռավոր երկրներում, ներկայացնում էր **Բաքոսուհիները**:

Ողբերգության միջնամասում, երբ Ագավեն բեմ է վերադառնում և բերում իր որդու՝ Թեբեի արքա Պենթևսի հոշոտված գլուխը, դերասանը կիսով չափ հելլենականացված բարբարոսների համար արտասանում է այս հայտնի տունը:

φέρομεν ἐξ ὀρέων
ἕλικα νεότομον ἐπὶ μέλαθρα
Μακαρίαν θήραν

Մենք բերում ենք լեռներից
Այս բաղեղը՝ նոր կտրած,
Լավն է որսը (9):

(*Բաքոսուհիներ*, տուն 1169-1171)

Այս էր Կրասսոսի արշավանքի վախճանը, որն, իրոք, ավարտվեց ողբերգության նման[1] (10):

---

[1] **Plut.**, Crass., 33.

1. Կրասսոսի Պարթևական արշավանքի գաղափարը պաշտպանել է Հուլիոս Կեսարը, որը Գալլիայից հատուկ նամակով հավանություն է տվել դրան: Դեռ ավելին, Կրասսոսի որդուն՝ Պուբլիոսին, որն իր մոտ էր ծառայում, 1000 ընտիր հեծյալների ուղեկցությամբ ուղարկել է Կրասսոսին օգնության (Plut., Crass., 16-17): - Էջ 514:

2. Հիերապոլսի (Սրբազան քաղաք) հռվանավոր դիցուհին Դերկետոն էր: - Էջ 514:

3. Անգամ Պլուտարքոսն է խոստովանում, որ Կրասսոսի հակազդեցությունը Արտավազդ II-ի դիրքորոշման նկատմամբ **«անխոհեմ էր»** (Plut., Crass., 22): - Էջ 515:

4. Եվրիպիդեսի «Բաքոսուհիներից» այս հատվածը Ն. Աղոնցը հունարենից թարգմանել է ֆրանսերեն, իսկ մեր թարգմանիչն այն վերաթարգմանել է հայերեն, և, բնականաբար, բուն բնագիրն ինչ-որ չափով աղճատվել է: Համեմատության համար բերում ենք «Բաքոսուհիների»՝ Ա. Թոփչյանի հին հունարենից կատարված թարգմանությունը՝

*Ագավե*

**Մենք լեռներից տուն ենք բերում**
**Նոր կտրված այս բաղեղը,**
**Այս ավարը երանելի:**

*Երգչախումբ*

**Ո՞վ հարվածեց առաջինը:**

*Ագավե*

**Ե՛ս, և ի՛մն է այդ պատիվը:**

Տե՛ս **Եվրիպիդես,** Բաքոսուհիներ. Հին հունարենից թարգմանեց Արամ Թոփչյանը, Երևան, 1995, էջ 57: - Էջ 521:

5. Ուսումնասիրողների կարծիքով ակնարկը Հայոց թագավոր Արտավազդ II-ի մասին է: Արտավազդի ժամանակաշրջանի Հայոց պատմության վերաբերյալ վերջին լավագույն ուսումնասիրություններից տե՛ս Գ. Խ. Սարգսյանի «Հայաստանը Արտավազդ Բ-ի և նրա հաջորդների ժամանակաշրջանում»՝ «Հայ ժողովրդի պատմության» I հատորում (Երևան, 1971) զետեղված բաժինը (էջ 603-626) և Ռ. Լ. Մանասերյանի՝ «Հայաստանը Արտավազդից մինչև Տրդատ Մեծ» մենագրությունը (Երևան, 1997): - Էջ 521:

6. **Էքսոդոս** - Ողբերգության ավարտական՝ բեմից «դուրս գալու» երգը: - Էջ 521:

7. Սուրենն սպանվել է Օրոդես II-ի (57-38) կարգադրությամբ, որը նախանձում էր իր զորավարի վաստակած փառքին և երկյուղում, թե վերջինս կարող էր գրավել գահը: - Էջ 521:

8. Բակուրը սպանվել է 38 թ.՝ հռոմեացիների դեմ Հյուսիսային Սիրիայում մղված ճակատամարտերից մեկի ժամանակ: - Էջ 521:

9. Հմմտ. 612-րդ էջ, ծան. 4: - Էջ 522:

10. Հավանաբար «Կրասոսն ընդդեմ պարթևների (ըստ սկզբնաղբյուրների)» հատվածի շարունակությունն է կազմել «Մարկոս Անտոնիոս» 12 էջանոց ֆրանսերեն թերավարտ ուսումնասիրությունը (տե՛ս պրոֆ. Ն. Ադոնցի ֆոնդ, պահարան I, զզրոց Բ, թղթածրար Ա/7: - Էջ 522:

## III. [ՀԱՅԱՍՏԱՆԸ ՀՌՈՄԵԱ-ՊԱՐԹԵՎԱԿԱՆ ՀԱԿԱՄԱՐՏՈՒԹՅԱՆ ՈԼՈՐՏՈՒՄ (Ք. հ. II դ.-III դ. սկզբը)]

(էջ 523)

Գրված է 1940-1941 թվականներին Բրյուսելում: Ֆրանսերեն բնագիրը գտնվում է Համազգայինի Բեյրութի գրական պահոցի՝ պրոֆ. Ն. Ադոնցի ֆոնդում (պահարան I, զզրոց Բ, թղթածրար 2):

Բնագիրը, որն ունի 23×30 սմ մեծություն, գրված է 15 թերթիկների վրա: Տպագրվում է Ս. Ս. Խաչատրյանի թարգմանությամբ:

Տպագրության հանգամանքների մասին տե՛ս աստ, էջ 611:

II-III դարերի իրադարձություններին նվիրված այս նյութից բացի, թղթոնում առկա են նաև Ք. հ. I դարի Հայոց պատմությանը վերաբերող «Հայ Արշակունիների թագավորության կազմավորումը. Ք. հ. 12-66 թթ.» (ֆրանսերեն, 40 էջ), «Հայ-պարթևական հարաբերությունները Ք. հ. 16-